Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք


ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ


# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ


№ 3 ՓԵՏՐՎԱՐ 1955

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ— Սովետական մեծ տերության հզոր Զինված Ուժերը . . . . . . . . . 1
Ա. ԵՍԱՅԱՆ— Ընտրությունները բուրժուական երկրներում . . . . . . . . . . . . 15

Օգտագործիր զրույցի ժամանակ

Մեր ռեսպուբլիկան ինչպիսի նվաճումներով է դիմավորում ընտրությունները (թվեր և փաստեր) 24

Միջազգային թեմաներ

Ինդոնեզական ժողովուրդը պաշտպանում է իր անկախությունը . . . . . . . . . . 32

Օգնություն ագիտատորներին

Թեմաներ և գրականություն ագիտատորների զրույցների համար . . . . . . . . . . . 41
Պետական փոխառությունների շահումների և մարման խաղարկությունների 1955 թվականի պլանը . . . . . . . . . . . . . 46
Նոր գրքեր . . . . . . . . . 50

---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին: Հեռախոս 2—52—78:



# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԵԾ ՏԵՐՈՒԹՅԱՆ ՀԶՈՐ ԶԻՆՎԱԾ ՈՒԺԵՐԸ

## Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

*Մեր երկրում փետրվարի 23-ը համաժողովրդական տոն է: Այդ պատմական օրը սովետական մարդկանց հետ միասին ժողովրդական դեմոկրատիայի երկրների աշխատավորներն ու ամբողջ առաջադեմ մարդկությունը իրենց խորը երախտագիտությունն ու շնորհակալությունն են արտահայտում Սովետական Միության Զինված Ուժերի նկատմամբ:*

*Սովետական բանակը, ծնունդ առնելով Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի բոցերի մեջ, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ հերոսաբար պայքարել է մեր մեծ Հայրենիքի և ողջ առաջավոր մարդկության թշնամիների դեմ ու անթառամ փառքով պսակել իր հաղթական դրոշները:*





Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայից անմիջապես հետո ամերիկա-անգլիական իմպերիալիստները և նրանց արբանյակները, մեր երկրի ներքին կոնտրռևոլյուցիոն ուժերի հետ դաշինք կնքած, հարձակման անցան աշխարհում առաջին Սովետական պետության դեմ։ Մեծագույն վտանգ էր կախված երիտասարդ Սովետական պետության վրա։ Հայրենիքի ազատությունն ու անկախությունը պաշտպանելու, ռևոլյուցիայի թշնամիներին ջախջախելու համար անհրաժեշտ էր բանվորների ու գյուղացիների շահերին հավատարմորեն ծառայող Զինված Ուժերի ստեղծումը։ Լենինի գլխավորությամբ ահա այդ հարցով մտահոգվեց Կոմունիստական պարտիան։

1918 թվականի հունվարի 28-ին Ժողովրդական Կոմիսարների Սովետի Նախագահ Վ. Ի. Լենինը ստորագրեց Կարմիր Բանակ ստեղծելու մասին դեկրետը։ Նույն թվականի փետրվարի 14-ին Վ. Ի. Լենինի ստորագրությամբ հրապարակվեց դեկրետ՝ Ռազմա-Ծովային Նավատորմ կազմակերպելու մասին։ Մարդկության պատմության մեջ առաջին անգամ ստեղծվեց բանվորների և գյուղացիների բանակ, նոր, ավելի բարձր տիպի բանակ, իսկական ժողովրդական բանակ։



Ի տարբերություն մինչև այդ գոյություն ունեցող բոլոր բանակներից և ներկայիս բուրժուական բանակներից, կարմիր բանակը իր կազմակերպման առաջին իսկ օրից հանդիսացավ մեր երկրի ժողովուրդների եղբայրության բանակ, ճնշված ժողովուրդների ազատության բանակ, որը պաշտպանում է աշխատավորների շահերը, սոցիալիստական ազգերի անկախությունը։ Դաստիարակված լինելով ինտերնացիոնալիզմի ոգով, ժողովուրդների միջև խաղաղությունը պահպանելու ու ամրապնդելու ոգով, մեր բանակը բարեկամներ ունի աշխարհի բոլոր մասերում։

1918 թվականի սկզբներին գերմանական իմպերիալիստները հարձակվելով մեր Հայրենիքի վրա, ներխուժեցին Ուկրաինա, Բելոռուսիա և շարժվեցին դեպի Պետրոգրադ։ Երիտասարդ Սովետական Ռեսպուբլիկայի վրա մահացու սպառնալիք էր կախվել։

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը սոցիալիստական Հայրենիքը հայտարարեցին վտանգի մեջ և բանվորներին ու գյուղացիներին կոչ արեցին՝ ազատագրական պայքարի դուրս գալ ընդդեմ օտարերկրյա զավթիչների։

Իր գոյության առաջին իսկ օրերից իմպերիալիստական զավթիչների դեմ մղած մար-

տերում Սովետական Բանակը ցույց տվեց արիության, խիզախության, Հայրենիքին անհունորեն նվիրվածության լավագույն օրինակներ։

1918 թվականի փետրվարի 23-ին Սովետական բանակի զորագնդերը Պսկովի ու Նարվայի տակ ջախջախիչ հարված հասցրին գերմանական ինտերվենտներին։ Այդ օրը Սովետական բանակի տարեգրության մեջ մտավ որպես նրա ծննդյան օր և ամեն տարի նշվում է իբրև համաժողովրդական տոն։

Սակայն մեր Հայրենիքին սպառնաց նոր վտանգ։ Ամերիկյան իմպերիալիստների կողմից ոգեշնչված կոնտրռևոլյուցիոն ուժերը ավելի կատաղորեն սկսեցին ոտնձգություններ կատարել Սովետական ռեսպուբլիկայի դեմ, որը թշնամու բանակների կողմից առնված էր կրակե օղակի մեջ։ Նրա երեք քառորդ մասը գտնվում էր օտարերկրյա ինտերվենտների և սպիտակ գվարդիականների ձեռքում։

Պարտիայի կոչով մեր երկրի աշխատավորները ոտքի ելան՝ իրենց Հայրենիքը պաշտպանելու համար։ Ռազմաճակատ մեկնեցին հարյուր հազարավոր բանվորներ,



տասնյակ հազարավոր կոմունիստներ ու կոմերիտականներ։

Կոմունիստական պարտիան, կազմակերպելով մեր երկրի Զինված Ուժերը ու նրանց մարտի կոչելով թշնամու դեմ, հաղթանակի հավատ էր ներշնչում սովետական մարդկանց մեջ։ «Սովետական ռեսպուբլիկան,— ասում էր Վ. Ի. Լենինը,— շրջապատված է թշնամիներով։ Բայց նա կհաղթի թե՛ արտաքին և թե՛ ներքին թշնամիներին»։

***

Քաղաքացիական պատերազմն ավարտվեց հաղթական կերպով։ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ սովետական ժողովուրդը ձեռնամուխ եղավ խաղաղ, ստեղծագործ աշխատանքի, սոցիալիզմի կառուցման գործին։ Սակայն մեր երկրի ժողովուրդները երբեք չէին մոռանում օտարերկրյա զավթիչների ոտնձգությունների հետագա փորձերը մեր Հայրենիքի դեմ և անդուլ կերպով հոգ էին տանում Կարմիր Բանակի հզորությունն ամրապնդելու համար, զինում էին նրան առաջնակարգ մարտական տեխնիկայով և սիրով աճեցնում սովետական ռազմական կադրերը։

Վ. Ի. Լենինի մահից հետո, նրա հավատարիմ աշակերտ և նրա գործի մեծ շարու-

նակող Ի. Վ. Ստալինի գլխավորած Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեն, հատուկ ուշադրություն ցուցաբերելով Սովետական Զինված Ուժերի նկատմամբ, մտահոգվում էր նրա հրամանատարական կադրերի աճեցման ու դաստիարակման, մեր բանակը ժամանակակից մարտական տեխնիկայով զինելու հարցով։

Սովետական Միության ինդուստրացման վերաբերյալ պարտիայի քաղաքականության հաղթանակն է՛լ ավելի ուժեղացրեց մեր երկրի ռազմական հզորությունը և ամրապնդեց նրա պաշտպանունակությունը։ Նախապատերազմյան հնգամյակների տարիներին Սովետական Զինված Ուժերը ստացան այն ժամանակվա համեմատ ավելի շատ և առաջնակարգ մարտական տեխնիկա։ Երկրում ստեղծվեցին առաջնակարգ հրետանային, հզոր զրահատանկային և մեխանիզացված զորքեր, ժամանակակից օդային նավատորմ և հակաօդային պաշտպանության միջոցներ։ Սկսվեց Ռազմա-Ծովային մեծ Նավատորմի կառուցումը։ Այդ բոլորը բարձր մակարդակի հասցրին Սովետական Միության Զինված Ուժերի մարտական պատրաստությունը։

Իմպերիալիստական ավազակախմբերը բազմիցս փորձեր են կատարել հարձակվելու



Սովետական Միության պետական սահմանների վրա։ Սակայն ամեն անգամ նրանք ջախջախիչ հարվածներ են ստացել Սովետական Զինված Ուժերի կողմից։

1939 թվականին Սովետական բանակը, պատվով կատարելով իր պատմական միսիան, ազատագրեց Արևմտյան Ուկրաինան և Արևմտյան Բելոռուսիան։ 1939—1940 թվականներին սպիտակ-ֆինների դեմ մղած պատերազմում Սովետական բանակը հաղթանակ տանելով, ապահովեց մեր Հայրենիքի Հյուսիս-արևմտյան սահմանների անվտանգությունը։

Մեր խաղաղ շինարարության մեջ մենք չէինք ունենա այնպիսի հաջողություններ, որոնցով այժմ մենք հպարտանում ենք, եթե Կոմունիստական պարտիան չամրապնդեր մեր պետության հզորությունն ու նրա ակտիվ պաշտպանությունը։

***

1941 թվականի հունիսի 22-ին, հիտլերյան ղավթիչներն առանց պատերազմ հայտարարելու, ուխտադրժորեն հարձակվեցին մեր Հայրենիքի վրա։ Այդ արդեն իմպերիալիստների մի նոր փորձ էր՝ ոչնչացնել Սովետական պետությունը, ստրկացնել սովետական և ազատասեր մյուս ժողովուրդներին։

Հայրենական Մեծ պատերազմի սկզբից ևեթ Կոմունիստական պարտիան հանդես եկավ որպես սովետական ժողովրդի և նրա Զինված Ուժերի ոգեշնչողն ու մարտական ղեկավարը։ Պարտիայի կոչով թշնամու դեմ գոտեմարտի դուրս եկան սովետական մարդիկ՝ «Ամեն ինչ ռազմաճակատի համար, ամեն ինչ հաղթանակի համար» լոզունգով։ Պարտիայի Կենտրոնական Կոմիտեի և Սովետական կառավարության որոշմամբ Սովետական պետության Զինված Ուժերի գլուխ կանգնեց Ի. Վ. Ստալինը։ Պետական ապարատի կարևորագույն ասպարեզը, երկրի պաշտպանության գործի կազմակերպումը ղեկավարում էին ընկերներ Գ. Մ. Մալենկովը, Վ. Մ. Մոլոտովը, Կ. Ե. Վորոշիլովը, Լ. Մ. Կագանովիչը, Ա. Ի. Միկոյանը և պարտիայի մյուս ականավոր գործիչները։ Պարտիայի Կենտրոնական Կոմիտեն անմիջականորեն ռազմական աշխատանքի ուղարկեց ընկերներ Ն. Ա. Բուլգանինին, Ն. Ս. Խրուշչևին, Ա. Ա. Ժդանովին, Ա. Ս. Շչերբակովին և Կենտկոմի մյուս անդամներին։

Ավելի քան 4 տարի տևող Հայրենական Մեծ պատերազմում Սովետական Զինված Ուժերը, հարազատ Կոմունիստական պար-



տիայի ղեկավարությամբ, զինված ամենաառաջավոր ռազմական գիտությամբ, հենվելով մեր երկրի տնտեսական հզորության և սովետական ժողովրդի բարոյա-քաղաքական միասնության վրա, մեծագույն հաղթանակ տարան թշնամու դեմ և դրանով իսկ պաշտպանեցին սոցիալիզմի պատմական նվաճումները, աշխարհի ժողովուրդներին փրկեցին ֆաշիստական ստրկության սպառնալիքից։

Հայրենական Մեծ պատերազմում ֆաշիստական զավթիչների և յապոնական իմպերիալիստների դեմ հաղթանակող դուրս եկան մեր սովետական հասարակարգը, մեր պետական կարգը, մեր Սովետական Զինված Ուժերը։

Ֆաշիստական Գերմանիայի և իմպերիալիստական Յապոնիայի ջախջախման գործում գլխավոր և վճռական դեր խաղաց Սովետական Միությունը, որի բանակը իր վրա վերցնելով ծանր ու դաժան մարտերի գլխավոր հարվածը, պատերազմի հենց սկզբից, համառ ու արյունալի կռիվներում ջախջախիչ հարվածներ հասցնելով թշնամուն, նրան աստիճանաբար հյուծելով ու արյունաքամ անելով, հասցրեց վերջնական պարտության։

Երկրորդ համաշխարհային պատերազմի

ավարտումից հետո փոխվեցին ուժերի հարաբերակցությունները երկու սիստեմների միջև, ամրապնդվեց սոցիալիզմի և դեմոկրատիայի լագերը, որը Սովետական Միության գլխավորությամբ պայքարում է ամբողջ աշխարհում խաղաղություն հաստատելու համար։



Սովետական Միության աշխատավորները ՍՍՌՄ Զինված Ուժերի 37-րդ տարեդարձը դիմավորում են արտադրական ու քաղաքական բուռն խանդավառության վերելքի պայմաններում, հաջողությամբ իրականացվում է հինգերորդ հնգամյա պլանը։ Բավական է նշել, որ ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը 1954 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, աճել է 13 տոկոսով և 1950 թվականի համեմատությամբ՝ 65 տոկոսով։ Այդ աճը, ինչպես նաև արդյունաբերական արտադրանքի՝ 1955 թվականի պլանով նախատեսված հետագա ավելացումը ապահովում են հինգերորդ հնգամյա պլանի առաջադրանքի կատարումը ժամկետից շուտ, պլան, որը նախատեսում է 1955 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, արդյունաբերական արտադրության բարձրացում մոտավորապես 70 տոկո-



սով։ 1954 թվականին մեր երկրում շահագործման հանձնվեց ատոմային էներգիայով աշխատող առաջին արդյունաբերական էլեկտրակայանը՝ 5 հազար կիլովատ օգտակար կարողությամբ։ Նույն թվականին արդյունաբերության, շինարարության և տրանսպորտի մեջ արմատավորվեցին ավելի քան 900 հազար գյուտեր, տեխնիկական կատարելագործումներ և ռացիոնալիզատորական առաջարկներ։

Կենսագործելով պարտիայի և կառավարության որոշումները սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման վերաբերյալ՝ վիթխարի հաջողությունների հասան մեր կոլտնտեսություններն ու սովխոզները։ Միայն անցյալ տարի հերկվեց 17 միլիոն 600 հազար հեկտար խամ ու խոպան հող։ Չնայած նրան, որ Ուկրաինայի հարավում և Պովոլժյեյի շրջաններում եղանակները անբարենպաստ էին, այնուամենայնիվ, մեր երկրում, 1953 թվականի համեմատությամբ, 1954 թվականին պետությանը հանձնվել ու վաճառվել է 271 միլիոն փթով ավելի հացահատիկ։ 1953 թվականի համեմատությամբ հավաքվեց ավելի շատ բամբակի հումք, կարտոֆիլ ու բանջարեղեն և գյուղատնտեսական այլ մթերքներ։

1954 թվականին է՛լ ավելի ամրապնդվեց գյուղատնտեսության նյութական-տեխնիկական բազան։ Գյուղատնտեսությունն անցյալ տարի ստացավ ընդհանուր գործածության 137 հազար տրակտոր (15 ուժանոցի վերածած) և 46 հազար միջշարային մշակության տրակտոր, 37 հազար հացահատիկային կոմբայն, 116 հազար բեռնատար ավտոմոբիլ, 100 հազար տրակտորային գութան, 94 հազար տրակտորային շարքացան, 94 հազար տրակտորային կուլտիվատոր, մոտավորապես 200 հազար ինքնագնաց ու տրակտորային խոտհավաք մեքենաներ և այլն։ Անցյալ տարի խոպան և խամ հողերի յուրացման շրջաններն է փոխադրվել 115 հազար տրակտոր (15 ուժանոցի վերածած), 18 հազար հացահատիկային կոմբայն և այլ գյուղատնտեսական մեքենաներ։ Մեքենա-տրակտորային կայանները անցյալ տարի կատարել են կոլտնտեսությունների դաշտային հիմնական աշխատանքների 82 տոկոսը։

Սովետական ժողովրդի հաջողությունները ունեն միջազգային խոշոր նշանակություն։ Նրանք ամբողջ աշխարհի աշխատավորներին զինում են սոցիալիստական պետության ստեղծման, սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման հարուստ փորձով։ Նրանք ցույց են



տալիս լենինիզմի գաղափարների կենարար ուժն ու հզորությունը։

Արտաքին քաղաքականության ասպարեզում Սովետական Միության գլխավոր խնդիրը եղել և մնում է երկարատև խաղաղության ապահովումը ամբողջ աշխարհում, բոլոր ժողովուրդների միջև համագործակցություն և բարեկամական փոխըմբռնում ստեղծելը։

Հակառակ Սովետական Միության խաղաղասիրական քաղաքականության, ամերիկա-անգլիական ագրեսորները համաշխարհային նոր պատերազմ են բորբոքում։ Նրանք ատոմային պատերազմի կոչեր են անում, փորձելով դրանով սարսափի մեջ գցել ամբողջ աշխարհը։ Պատերազմի հրձիգները պետք է հիշեն, որ «Քամի ցանողը փոթորիկ կհնձի»։

Ի հակադրություն ամերիկա-անգլիական իմպերիալիստների ագրեսիվ քաղաքականության, խաղաղասեր ժողովուրդներն ու աշխարհում խաղաղության բոլոր կողմնակիցները համախմբում են իրենց ուժերը, որպեսզի վիժեցնեն պատերազմի իմպերիալիստական հրձիգների պլանները։ Ամբողջ աշխարհում խաղաղություն հաստատելու մեծ շարժումը առաջնորդում է դեմոկրա-

տիայի ու սոցիալիզմի լագերը, Սովետական Միության ղեկավարությամբ, որն իր շուրջը միավորում է 900 միլիոն մարդ։

Սովետական Միությունը զբաղված լինելով ստեղծագործ աշխատանքով և անշեղորեն կիրառելով բոլոր երկրների հետ խաղաղ համագործակցելու իր քաղաքականությունը, երբեք աչքաթող չի անի իր երկրի անվտանգության հարցը։ Կոմունիստական պարտիան ու Սովետական կառավարությունը ինչպես միշտ, այնպես էլ ներկա պայմաններում, պատշաճ հոգատարություն են ցուցաբերում ՍՍՌՄ Զինված Ուժերը նոր, ավելի կատարյալ զենքով ու մարտական տեխնիկայով հագեցնելու, մեր Հայրենիքի ակտիվ պաշտպանությունը ամրապնդելու համար։

Սովետական բանակի և Ռազմա-Ծովային Նավատորմի ռազմիկները, ջանասիրաբար կատարելագործելով իրենց ռազմական ու քաղաքական գիտելիքները, գտնվում են մշտական մարտական պատրաստության վիճակում՝ արժանի հակահարված տալու բոլոր նրանց, ովքեր կմտադրվեն ոտնձգության փորձեր անելու մեր Հայրենիքի անվտանգության դեմ, խանգարելու կոմունիզմ կառուցող սովետական ժողովրդի խաղաղ, ստեղծագործ աշխատանքը։

---

# ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

Դոցենտ՝ Ա.Ղ. ԽՍԱՅԱՆ

Բուրժուական երկրներում հիմնականում գործում է երկու ընտրական սիստեմ՝ համեմատական և մաժորիտար։ Վերջինն էլ լինում է երկու տեսակի՝ հարաբերական մեծամասնության մաժորիտար սիստեմ և բացարձակ մեծամասնության մաժորիտար սիստեմ։

Համեմատական սիստեմի դեպքում ընտրությունները անց են կացվում ըստ մեծ օկրուգների, որոնցից յուրաքանչյուրում ընտրվում է ոչ թե մեկ, այլ մի քանի դեպուտատ, և ընտրություններին մասնակցող պարտիաները քվեարկության են դնում դեպուտատության թեկնածուների իրենց ցուցակները։ Ընտրությունների այս սիստեմի դեպքում ամեն մի պարտիա կարողանում է իր ցուցակի օգտին տրված ձայների քանակին համապատասխան դեպուտատական տեղեր զբաղեցնել տվյալ ներկայացուցչական օրգանում։ Ընտրությունների համեմատական սիստեմը կապիտալիստա-

կան կարգերի պայմաններում համեմատաբար դեմոկրատական է և բուրժուա-դեմոկրատական իրավունքների տարրերից մեկն է կազմում։

Իմպերիալիզմի շրջանում, երբ կապիտալիստական կարգերում թագավորում է քաղաքական ռեակցիան, բուրժուազիան մի կողմ է նետում ընտրությունների համեմատական սիստեմը և մտցնում է մոնոպոլիաների շահերը մաքսիմում չափով ապահովող ընտրությունների հակաժողովրդական մաժորիտար սիստեմը։ Հարաբերական մեծամասնության մաժորիտար սիստեմի դեպքում, տվյալ ընտրական օկրուգում ընտրված է համարվում այն պարտիայի թեկնածուն, որը մյուսների նկատմամբ ավելի շատ ձայն է ստացել, թեկուզ և նրա ստացած ձայների քանակը ընտրողների ձայների կեսն էլ չկազմի։ Այսպես, օրինակ, ենթադրենք, թե տվյալ օկրուգում իրենց թեկնածուներն են առաջադրել 4 պարտիա և ընտրողները 15.000 հոգի են։ Առաջին պարտիան ստացել է 5.000 ձայն, երկրորդը՝ 4.000, երրորդը՝ 3.500 և չորրորդը՝ 2.500 ձայն։ Ըստ բուրժուական ընտրական այդ սիստեմի, առաջին պարտիայի թեկնածուն, որը ստացել է 5000 ձայն, համարվում է ընտրված, իսկ մնացած երեք պարտիանե-



րը 10.000 ձայնով ոչ մի տեղ չեն ստանում ներկայացուցչական օրգանում։

Ինչ վերաբերում է ընտրությունների բացարձակ մեծամասնության մաժորիտար սիստեմին, ապա այդ դեպքում ընտրված համարվում է այն պարտիայի թեկնածուն, որը ստացել է ձայների կեսից ավելին։

Երբ բուրժուազիան պայքարելով ֆեոդալիզմի դեմ, ձգտում էր իշխանության, նա պահանջում էր, որպեսզի իշխանության օրգանները ընտրվեն ժողովրդի կողմից, իսկ երբ անցավ իշխանության գլուխ և ամրապնդեց իր տնտեսական ու քաղաքական տիրապետությունը, գրոհի անցավ հենց ժողովրդի դեմ, նրան իշխանությունից հեռու պահելու համար։

Դասակարգային պայքարի պրոցեսում, վախենալով բանվոր դասակարգից, բուրժուազիան հարկադրված էր ազդարարել ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական իրավունք։ Սակայն այդ իրավունքը բուրժուական բոլոր երկրներում մնաց ձևական, որովհետև բուրժուական պետությունը մի կողմից այդ իրավունքից օգտվելու համար նյութական պայմաններ չի տալիս և մյուս կողմից, մտցրել է բազմաթիվ սահմանափակումներ, ինչպես, օրինակ, տարիքային ցենզ, ըստ որի բուրժուական տարբեր եր-

կրրներում ընտրություններին կարող են մասնակցել 20—25 տարեկան քաղաքացիները, այսինքն այդ հասակը չունեցող երիտասարդները զրկված են ընտրական իրավունքից։ Այս ճանապարհով բուրժուազիան պետական իշխանության օրգանների ընտրություններից հեռու է պահում բանվոր դասակարգի զգալի մասը կազմող քաղաքականապես հասուն երիտասարդությանը։

Սեռային ցենզ, որով կանայք զրկվում են ընտրություններին մասնակցելու իրավունքից։ Դա ուղղված է բազմամիլիոն աշխատավոր կանանց դեմ, որոնք կապիտալի ճնշումը կրում են ավելի, քան տղամարդիկ։

Նստակեցության ցենզ, որը նշանակում է տվյալ վայրում բնակվելու որոշ ժամկետ։ Բուրժուական երկրներում նստակեցության ցենզը սահմանված է 3 ամսից մինչև 5 տարի։ Նստակեցության ցենզը գործում է մասնավորապես ԱՄՆ-ում, որի հետևանքով միլիոնավոր սեզոնային և գործազուրկ բանվորներ «օրենքով» զրկվում են ընտրական իրավունքից, նրա համար, որ նրանք մշտական աշխատանք չունեն և մի կտոր հաց վաստակելու նպատակով թափառում են մի տեղից մյուսը։

Աշխատավորների ընտրական իրավունքները սահմանափակելու նպատակով, բուր-



ժուական երկրներում մտցված են նաև այլ ցենզեր, ինչպես, օրինակ, կրթության, գույքային, հարկային, հանդիսատ ու խաղաղ վարքագծի և այլն։ ԱՄՆ-ի շատ նահանգներում կան 50-ից ավելի ցենզեր ու սահմանափակումներ։ Ձևականորեն ազդարարելով ընդհանուր ընտրական իրավունք, ԱՄՆ-ում կիրառվող սահմանափակումների ուժով 1952 թվականի ընտրությունների ժամանակ ընտրական իրավունքից զրկվեց 13 միլիոն 116 հազար մարդ։

Բուրժուական երկրներում գոյություն չունի հավասար ընտրական իրավունք։ Բազմաթիվ կապիտալիստներ մեկի փոխարեն ունեն 2 և ավելի ձայն, օրինակ, Անգլիայում այն անձինք, որոնք ունեն սեփականություն՝ ֆաբրիկաներ, գործարաններ, կալվածքներ, բանկեր և այլ, ընտրությունների ժամանակ ստանում են մի քանի ձայն։ Նրանք ձայն են ստանում թե այն օկրուգից, որտեղ իրենք բնակվում են և թե այն օկրուգից, որտեղ գտնվում է իրենց սեփականությունը։ Անգլիական բանկերի և խոշոր ձեռնարկությունների կենտրոն Լոնդոնի Սիտիի ընտրական օկրուգում ապրում է ընդամենը 11 հազար բնակիչ, սակայն նույն օկրուգում քվեարկողների թիվը հասնում է 44 հազարի։ Նույն Անգլիայում լրացուցիչ

ձայնի իրավունքից օգտվում են համալսարանական դիպլոմ ունենալու համար։

Բուրժուական երկրներում հավասար ընտրական իրավունքը ձևական է նաև այն պատճառով, որ ընտրական օկրուգները կազմվում են անհավասար թվով ընտրողներից։ Օրինակ, Ամերիկայի Միացյալ Նահանգներում կիրառվում է այսպես կոչված «ընտրական աշխարհագրություն»-ը, որի շնորհիվ ընտրական օկրուգներն այնպես են կազմում, որպեսզի բուրժուազիայի համար հուսալի քիչ թվով ընտրողները ավելի շատ թվով դեպուտատներ ընտրեն, քան բանվորներով բնակեցված ավելի շատ ընտրողներ ունեցող օկրուգները։

Բուրժուական կոնստիտուցիաները ազդարարում են նաև ուղղակի ընտրություններ, որը նշանակում է, թե ներկայացուցչական օրգանների դեպուտատները անմիջականորեն պետք է ընտրվեն ընտրողների կողմից։ Իրականում բուրժուական երկրներից շատերում կիրառվում է անուղղակի կամ բազմաստիճան ընտրությունների սիստեմը։ Ընտրությունների այս սիստեմի ժամանակ ընտրողները անմիջապես չեն ընտրում դեպուտատին, այլ ընտրում են այսպես կոչված ընտրիչների և վերջիններս են, որ ընտրում են դեպուտատներին։ Անուղղակի



ընտրությունները բացառում են ընտրողների կապը ընտրված դեպուտատների հետ, նսեմացնում են ընտրողների քաղաքական մասնակցությունը երկրի կյանքին։ Անուղղակի ընտրությունները նպաստում են ընտրությունների արդյունքների կեղծելուն և չեն արտացոլում ընտրողների ռեալ վերաբերմունքը դեպի ներկայացուցչական օրգանը։

Ընտրությունների վերաբերյալ բուրժուական օրենքները ձևականորեն ճանաչում են քվեարկության գաղտնիությունը, մինչդեռ իրականում այն գոյություն չունի։ Նախընտրական օկրուգում մրցակից չունեցող դեպուտատության թեկնածուն համարվում է ընտրված առանց քվեարկության, ապա ընտրողներին տալիս են համարակալված բյուլետեններ և համարները նշում նրանց անունների դիմաց, որի շնորհիվ ձայնը հաշվելու ժամանակ կարելի է իմանալ, թե ընտրողներից ով ում դեմ է քվեարկել։ Կամ թե թույլատրվում է (ԱՄՆ) քվեարկել «լիազորագրով ուրիշի փոխարեն»։ Խցիկները, որոնցում կատարվում է քվեարկությունը, գտնվում են ոստիկանների վերահսկողության տակ, որպիսի հանգամանքը կաշկանդում է ընտրողներին և ըստ էության քվեարկողների նկատմամբ կատարվող հսկողության ձևերից մեկն է։ Կաշառատվությունը, խաբեբա-

յուխյունը, շանտաժը, ոստիկանական կամայականությունները գալիս են լրացնելու բուրժուական օրենքներով ընտրողների կամքի վրա ներգործելու բնագավառում թերի թողածը։

Բուրժուական երկրների ընտրական օրենքներով սահմանվում է դեպուտատության թեկնածուների առաջադրման այնպիսի կարգ, որը է՛լ ավելի է սահմանափակում ընտրություններին աշխատավորների մասնակցության հնարավորությունները։ Դեպուտատության թեկնածուներ առաջադրելու իրավունքը վերապահվում է քաղաքական պարտիաներին, մասնավորապես բուրժուական պարտիաներին։ Առաջադրվող թեկնածուն պետք է բավարարի ընտրական օրենքի պահանջները, ինչպես, օրինակ, Անգլիայում, Իռլանդիայում, Ճապոնիայում, Իրանում թեկնածուն պետք է մուծի բավական խոշոր դրամական գրավ։ ԱՄՆ-ում պահանջվում է, որ դեպուտատության թեկնածուն երկար ժամանակ ապրած լինի երկրում, իմանա պետական լեզուն և մուծի ընտրական հարկ։ Թյուրքիայում գոյություն ունի գրագիտության ցենզ և այլն։ Այդ բոլորին ավելանում է այն, որ ընտրությունների հետ կապված ծախսերն ընկնում են ընտրություններին մասնակցող պարտիա-



ների վրա, ով շատ միջոցներ ունի, նա էլ լայն հնարավորություններ ունի ընտրական կամպանիան իր ուզածին պես կազմակերպելու և անցկացնելու համար։

Վերևում շարադրվածից երևում է, որ բուրժուական երկրներում ընտրությունները կազմակերպվում և անց են կացվում այնպես, որպեսզի «ներկայացուցչական» օրգանների քողի տակ ծածկվի բուրժուազիայի ինքնիշխանությունը աշխատավորների նկատմամբ, որպեսզի ցույց տրվի, թե իբր ժողովուրդն է ընտրությունների միջոցով ստեղծում պետական իշխանության օրգանները և որ իբր վերջիններս էլ արտահայտում են ժողովրդի կամքը։ Կապիտալիստական կարգերի պայմաններում ազատ, ժողովրդական, իսկական դեմոկրատական ընտրություններ չկան։ Այդ կապակցությամբ մեծ Լենինը նշել է, որ աշխատավոր մասսաների համար հազարավոր ցանկապատերով ցանկապատված է մասնակցությունը բուրժուական պառլամենտում... և բանվորները հիանալի կերպով գիտեն և զգում են, տեսնում ու շոշափում են, որ բուրժուական պառլամենտն օտար հաստատություն է, բուրժուազիայի կողմից պրոլետարիատին ճնշելու գործիք է, թշնամական դասակարգի, շահագործողական փոքրամասնության հաստատություն է։

# ՄԵՐ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆ ԻՆՉՊԻՍԻ ՆՎԱՃՈՒՄՆԵՐՈՎ Է ԴԻՄԱՎՈՐՈՒՄ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

(Թվեր և փաստեր)

✪ *Ռեսպուբլիկայի արդյունաբերությունը ժամկետից շուտ և բարձր ցուցանիշներով կատարեց 1954 թվականի պլանը։ Արդյունաբերության համախառն արտադրանքը 1954 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, աճեց 79,2 տոկոսով, իսկ 1940 թվականի համեմատությամբ՝ 4,5 անգամ։*

✪ *Ռեսպուբլիկայի արդյունաբերությունը 1954 թվականին, համեմատական գներով, 87 անգամ ավելի շատ արտադրանք է տվել, քան 1913 թվականին։*

✪ *Վերջին 6 տարվա ընթացքում կառուցվել են 70 արդյունաբերական ձեռնարկություններ, այդ թվում՝ Կանազը, Գյումուշի և Սևանի հիդրոէլեկտրակայանները, բրդյա նուրբ գործվածքների կոմբինատը, Կաբելի գործարանը, Կոորդի ֆաբրիկան, Կոնյակի գործարանը, Շահումյանի մետաքսագործվածքային և Կիրովականի տրիկոտաժի ֆաբրիկաները, Երևանի սառցարանը, մետաղյա ամանեղենի գործարանը, Ա-*



*րաբկիրի կահույքի ֆաբրիկան, Արզնու Ապակու-տարայի գործարանը և այլն։*

✪ *Հայաստանի գործարաններն ու ֆաբրիկաներն այժմ արտադրում են ալյումին, պղինձ, կաբել, գեներատորներ, ավտոդողեր, տրանսֆորմատորներ, հիդրոտուրբիններ, կոմպրեսորներ, մետաղահատ դազգահներ, ավտոմոբիլային և տրակտորային պահեստի մասեր, ժամացույցներ, էլեկտրաչափիչ գործիքներ, շինանյութեր, բրդյա և մետաքսյա գործվածքներ, կոշկեղեն, սննդամթերք և այլն։*

✪ *Ռեսպուբլիկայում ստեղծված է հզոր էներգետիկ արդյունաբերություն։ Տարեցտարի ավելանում է էլեկտրաէներգիայի արտադրանքը։ Եթե 1913 թվականին Հայաստանում կար 10 մանր էլեկտրակայան, ապա ներկայումս էլեկտրակայանների թիվը հասնում է 112-ի։*

✪ *Էլեկտրաէներգիայի արտադրությունը 1954 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, ավելացել է 2,2 անգամ, իսկ 1940 թվականի համեմատությամբ 5,2 անգամ։*

✪ *Ներկայումս ռեսպուբլիկայի էլեկտրակայանները մեկ օրում ավելի շատ էլեկտրաէներգիա են տալիս, քան այն ստացվել էր ամբողջ 1913 թվականի ընթացքում։*

✪ *Սովետական Հայաստանում յուրաքանչյուր շնչին 1,6 անգամ ավելի էլեկտրաէներգիա է ընկնում, քան Մեծ Բրիտանիայում և Ֆրանսիայում, մոտ 3*

անգամ ավելի, քան Իտալիայում, 4 անգամ ավելի, քան Իսպանիայում, 30 անգամ ավելի, քան Թյուրքիայում, 100 անգամ ավելի, քան Իրանում և այլն։

✪ Բուռն թափով զարգանում է ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը։ 1940 թվականի համեմատությամբ, 1954 թվականին, կաշվե-կոշկեղենի արտադրությունն ավելացել է 3,4 անգամ, տրիկոտաժինը՝ 4,9, գորգեղենինը՝ մոտ 5 անգամ, գուլպայի արտադրությունը՝ ավելի քան 2 անգամ, մահճակալներինը՝ 7, պահածոներինը՝ 2,3, մսինը՝ 1,6, գինիներինը՝ մոտ 2 անգամ, գլանակներինը՝ 4,1, օճառինը՝ 1,8 անգամ և այլն։

✪ Ետպատերազմյան ժամանակաշրջանում ռեսպուբլիկայում ստեղծված բրդյա և մետաքսյա կտորեղենի ձեռնարկությունները իրենց արտադրանքը վերջին 3 տարում ավելացրել են ավելի քան 2 անգամ։ 1954 թվականին Լայն սպառման ապրանքների արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունները բաց են թողել 3.650 հազար մետր մետաքսյա և 2 միլիոն մետր բրդյա կտորեղեն։

✪ Ռեսպուբլիկայի սննդի արդյունաբերությունը թողարկում է ավելի քան 400 տեսակի արտադրանք։ Առաջիկա երկու տարում պետք է յուրացվեն լայն սպառման ապրանքների 30 և պարենային ապրանքների 25 նոր տեսակներ։



✪ Ռեսպուբլիկայում արդյունաբերական, բնակարանային և կուլտուր-կենցաղային շինարարության գծով կապիտալ ներդրումները 1954 թվականին եղել են 670 միլիոն ռուբլի, իսկ 1940 թվականին այն կազմում էր 305,1 միլիոն ռուբլի։

✪ 1946—1954 թվականներին ռեսպուբլիկայում կառուցվել և շահագործման է հանձնվել 563.014 քառակուսի մետր նոր բնակելի տարածություն, բացի դրանից, կառուցվել է 40 հազար անհատական բնակարան։

✪ 1950—1954 թվականներին ռեսպուբլիկայում կառուցվել է 76 դպրոց, մոտ 500 խանութ և այլն։

✪ Խոշոր նվաճումներ են ձեռք բերվել նաև գյուղատնտեսության բնագավառում։

✪ 1940 թվականի համեմատությամբ 1953 թվականին կոլտնտեսությունների դրամական եկամուտներն աճել են ավելի քան 2 անգամ, անբաժանելի ֆոնդերը՝ մոտ 4 անգամ, արտադրության հիմնական միջոցները՝ համարյա 3,5 անգամ։

✪ Ռեսպուբլիկայի ցանքատարածությունները 1913 թվականի համեմատությամբ ավելացել են 1,4 անգամ, իսկ 1919 թվականի համեմատությամբ՝ 5,7 անգամ, այդ թվում տեխնիկական կուլտուրաների ցանքատարածությունները ավելացել են համապատասխա-

նաթար 1,7 և 21 անգամ, բանջարաբոստանային կուլտուրաներինը՝ 2 և 92 անգամ։ Ջրովի հողերի տարածությունը 1913 թվականի համեմատությամբ ավելացել է 2,4 անգամ, խաղողի այգիների տարածությունը անցած 34 տարիների ընթացքում ավելացել է 4 անգամ։

✪ Հայաստանի կոլտնտեսությունների 95 տոկոսը սպասարկվում է 58 ՄՏ կայանների կողմից, որոնց տրակտորային պարկի հզորությունը 1953 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, ավելացավ 2,7 անգամ, իսկ կոմբայնների թիվը՝ 2,5 անգամ։ 1953 թվականին ՄՏ կայանները 4 անգամ ավելի գյուղատնտեսական աշխատանք են կատարել, քան 1940 թվականին։ ՄՏ կայաններն արդեն կատարում են ավելի քան 90 տեսակի գյուղատնտեսական աշխատանքներ։

✪ 1953 թվականին գյուղատնտեսական աշխատանքներից մեքենայացված են՝ վարը 80 տոկոսով, հացահատիկային կուլտուրաների ցանքը՝ 50 տոկոսով, բամբակի ցանքն ու շարամիջյան մշակությունը՝ 100 տոկոսով, շաքարի ճակնդեղի ցանքը՝ 100 տոկոսով, իսկ բերքահավաքը՝ 62 տոկոսով։



✪ Զգալի չափով ավելացել է հանրային անասունների գլխաքանակը, բարձրացել է նրանց մթերատվությունը։ 1954 թվականին 1953 թվականի համեմատությամբ, կովերի գլխաքանակն ավելացել է 14 տոկոսով, իսկ կաթնատվությունը բարձրացել է 6,6 տոկոսով։ Ավելացել է նաև կոլտնտեսականների, բանվորների ու ծառայողների անձնական սեփականությունը կազմող մանր և խոշոր եղջերավոր անասունների, խոզերի գլխաքանակը։

✪ Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը անդուլ հոգատարություն են ցուցաբերում աշխատավորների առողջության պահպանման նկատմամբ։ 1913 թվականի համեմատությամբ հիվանդանոցների թիվն ավելացել է 31 անգամ, նրանցում եղած մահճակալների թիվը 15 անգամ, դեղատներինը՝ 11 անգամ։ Եթե 1913 թվականին Հայաստանում կար ընդամենը 57 բժիշկ, ապա 1953 թվականին բժիշկների թիվը հասավ 2.664-ի։ Նախասովետական Հայաստանի գյուղական վայրերում ոչ մի բժշկական հիմնարկ չկար, իսկ 1953 թվականին ռեսպուբլիկայի գյուղական վայրերում կար 115 այդպիսի հիմնարկ։

Առողջապահության բյուջետային հատկացումները 1940 թվականի համեմատությամբ ավելացել են ավելի քան 3 անգամ։ Գնալով ընդլայնվում է սանատորիաների, հանգստյան տների, մանկամսուրների և առողջապահական այլ հիմնարկների ցանցը։

✪ Սովետական Հայաստանը դարձել է համատարած գրագիտության երկիր։ Հաջողությամբ իրականացվում է պարտադիր 7-ամյա կրթությունը՝ գյուղական վայրերում և տասնամյա պարտադիր կրթությունը՝ քաղաքներում։

Ներկայումս ռեսպուբլիկայում կա 1.177 մասսայական դպրոց, որտեղ սովորում է մոտ 300.000 աշակերտ և աշխատում են ավելի քան 16 հազար ուսուցիչներ։

Միայն վերջին մեկ տարում ռեսպուբլիկայում բացվել են 28 միջնակարգ, 14 բաներիտ և 15 գյուղերիտ դպրոցներ։

✪ Հայաստանում մինչև սովետական կարգերի հաստատումը չկար ոչ մի բարձրագույն ուսումնական հաստատություն, իսկ այժմ ռեսպուբլիկան ունի 12 ստացիոնար բուհ, հեռակա մանկավարժական ինստիտուտ և հեռակա բուհերի մի քանի ֆիլիալ։ Ռեսպուբլիկայի բուհերում, չհաշված հեռակա ուսուցման սիստեմը, սովորում են ավելի քան 13 հազար ուսանողներ։ Ռեսպուբլիկայի բուհերը և տեխնիկումները ամեն տարի հազարավոր մասնագետներ են տալիս ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի, ժողովրդական լուսավորության, գիտության, կուլտուրայի բոլոր բնագավառների համար։

✪ Միայն անցյալ ուսումնական տարում նրանք երկրին տվեցին 2.462 շրջանավարտներ, որից 1.371 մանկավարժ, 164 բժիշկ, 181 անասնաբույժ և զոո-



տեխնիկ, 271 ինժեներ, 196 ագրոնոմ, 73 արվեստի աշխատող, 39 տնտեսագետ և այլ մասնագետներ։

✪ Սովետական իշխանության տարիներին աննախընթաց կերպով զարգացել է գիտությունը։ Եթե նախառևոլյուցիոն Հայաստանում չկար ոչ մի գիտական հիմնարկ, ապա այժմ ռեսպուբլիկան ունի Գիտությունների ակադեմիա, տասնյակ գիտա-հետազոտական հաստատություններ, որոնք լուրջ ավանդ են մտցնում սովետական առաջավոր գիտության զարգացման գործում։

✪ Հայաստանը ծածկված է թատրոնների, ակումբների, գրադարանների, կինո-թատրոնների խիտ ցանցով։

Ներկայումս ռեսպուբլիկայում գործում է 1.200 ակումբ, 1.500 գրադարան, 362 կինոսարքավորում, 52 կուլտուրայի տուն, 10 թատրոն, 18 թանգարան, 13 կուլտուրայի և հանգստի պարկ։

Միայն 1954 թվականին ռեսպուբլիկայի քաղաքներում, գյուղերում, ՄՏ կայաններում և սովխոզներում բացվել են 10 ակումբ և 75 գրադարան։

✪ Հայկական ՍՍՌ-ում ամեն տարի միջին հաշվով լույս է տեսնում 500 անուն գիրք, 4 միլիոն տիրաժով, մասսայական գրադարանների գրքային ֆոնդը անցյալ տարի ավելացել է 2 միլիոն 500 հազար ռուբլու արժողությամբ նոր գրքերով։ Գիրքը դարձել է ժողովրդական լայն մասսաների սեփականությունը։

---

# ԻՆԴՈՆԵԶԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ ՊԱՇՏՊԱՆՈՒՄ Է ԻՐ ԱՆԿԱԽՈՒԹՅՈՒՆԸ

Գնալով ավելի լայն ծավալ է ստանում Ասիայի ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումը հանուն խաղաղության, ազատության և ազգային անկախության։ Այս շարժման մեջ մեծ տեղ է պատկանում ինդոնեզական ժողովրդին, որի մղած բազմամյա պայքարը գաղութային լծից ազատագրվելու համար արժանանում է ամբողջ պրոգրեսիվ մարդկության աջակցությանը։

Ավելի քան երեք հարյուր տարի Ինդոնեզիան գտնվել է հոլանդական գաղութարարների ճնշման տակ, որոնք գազանաբար շահագործում և թալանում էին բնակչությանը։

1942 թվականին երկիրն օկուպացվեց յապոնական միլիտարիստների կողմից։ Բայց ինդոնեզական ժողովուրդը չհնազանդվեց նոր նվաճողներին և անձնազոհ կերպով շարունակեց պայքարն իր ազատագրման համար։ 1945 թվականին ապստամբած ժողովուրդը վտարեց յապոնական օկու-



պանտներին։ Ինդոնեզիան անկախ ռեսպուբլիկա հռչակվեց։

Այդ հանդիսացավ նոր լուրջ հարված իմպերիալիստական գաղութային սիստեմին։ Իմպերիալիստական տերությունները ձեռք առան բոլոր միջոցները երիտասարդ ռեսպուբլիկան խեղդելու, երկրում գաղութային կարգերը վերականգնելու համար։ Նույն թվականին Անգլիան և Հոլանդիան Միացյալ Նահանգների ակտիվ աջակցությամբ սկսեցին զինված ինտերվենցիա ինդոնեզական ժողովրդի դեմ։ Ամերիկյան մոնոպոլիստները, ագրեսիա կազմակերպելով, հետապնդում էին միանգամայն որոշակի նպատակներ՝ ճնշելով ժողովրդի դիմադրությունը, իրենց ձեռքը վերցնել Ինդոնեզիայի էկոնոմիկան և այնտեղից դուրս մղել հոլանդական ու անգլիական մրցակիցներին։

Ի պատասխան ագրեսիայի, ինդոնեզական հայրենասերները զենքը ձեռքին ոտքի ելան պաշտպանելու իրենց հայրենիքը։ Արյունահեղ պատերազմն Ինդոնեզիայում տևեց 4 տարի։ Շուրջ 6 միլիոն հայրենասերներ իրենց կյանքը տվեցին ազգային անկախության համար մղվող պայքարում։ Ինտերվենտներին չհաջողվեց ինդոնեզացիներին ծնկի բերել։

Այդ ազատագրական պայքարում ինդոնե-

զական ժողովուրդը երբեք իրեն միայնակ
չէր զգում, բոլոր ժողովուրդների համակրան-
քը նրա կողմն էր։ Սովետական Միությունն
առաջիններից մեկը հանդես եկավ Ինդոնե-
զական ռեսպուբլիկայի պաշտպանությամբ,
որով բարոյական մեծ աջակցություն ցույց
տվեց հայրենասերներին։ Ինդոնեզական
ժողովրդի անձնազոհ պայքարը և համաշ-
խարհային հասարակայնության հզոր աջակ-
ցությունն ինտերվենտներին հարկադրեցին
խաղաղության բանակցությունների դիմել։

Սակայն ինտերվենտները բնավ չհրաժար-
վեցին իրենց ագրեսիվ մտադրություններից։
1949 թվականի վերջերին Հաագայում տեղի
ունեցավ այսպես կոչված «կլոր սեղանի
կոնֆերանս» Ինդոնեզիայի ներկայացու-
ցիչների և Անգլիայի, Հոլանդիայի, ԱՄՆ-ի
մասնակցությամբ։ Այդ կոնֆերանսի պաշ-
տոնական խնդիրն էր ինդոնեզական կոն-
ֆլիկտի խաղաղ կարգավորումը։

«Միջնորդի» դերում հանդես եկած Միաց-
յալ Նահանգների ճնշման տակ Ինդոնեզիա-
յի վզին փաթաթվեցին նրա ազգային շահե-
րին հակասող ստրկացուցիչ համաձայնա-
գրեր, մասնավորապես «հոլանդա-ինդոնե-
զական միության» ստատուտը, որը պահ-
պանում էր գաղութարարների արտոնություն-



ները Ինդոնեզիայում և լուրջ կերպով վնա-
սում այդ երկրի սուվերենությանը։

Հոլանդիան իրավունք ստացավ ինդոնե-
զական կառավարության արտաքին քաղա-
քականությանը բազմակողմանիորեն վերա-
հսկելու, երկրում իր զինված ուժերն ու ռազ-
մական բազաները պահելու։ Գաղութարար-
ներն ամեն կերպ ձգտում էին խանգարելու
ամուր կենտրոնացված պետություն ստեղ-
ծելուն, այդ պատճառով Ինդոնեզիան վե-
րածվեց ֆեդերալ պետության հոլանդական
թագի գերիշխանության ներքո։ Պարտքերի
վճարման անվան տակ ինդոնեզական ժո-
ղովրդի ուսերին դրվեց 4,3 միլիարդ գուլ-
դենի (մոտ 4,5 միլիարդ ռուբլի) չափով
վիթխարի կոնտրիբուցիա։

Ինդոնեզական ժողովուրդը վճռականորեն
հանդես եկավ «հոլանդա-ինդոնեզական մի-
ության դեմ»։ Ժողովրդական մասսաների
դիմադրությունը հասցրեց նրան, որ արդեն
1950 թվականին լիկվիդացվեց երկրի ֆեդե-
րալ կառուցվածքը, որը նրա վզին էր փա-
թաթված իմպերիալիստների կողմից և չէր
համապատասխանում ինդոնեզական ժողո-
վրդի շահերին։ Ինդոնեզիան դարձավ մի-
ասնական ռեսպուբլիկա։ Ինդոնեզիայի կա-
ռավարությունը դիվանագիտական և առև-
տրական հարաբերություններ հաստատեց

շատ երկրների հետ, այդ թվում Սովետական Միության հետ։

Այնուամենայնիվ «Հոլանդա-ինդոնեզական միությունը» շարունակում էր գոյություն ունենալ, ըստ էության հանդիսանալով երկրի քաղաքական և տնտեսական զարգացման կարևորագույն խոչընդոտներից մեկը։ Ինդոնեզիայում չդադարող ժողովրդական հզոր շարժման ճնշման տակ Հոլանդիան հարկադրված եղավ դիմելու բանակցությունների, որոնք ավարտվեցին 1954 թվականի ամռանը միության լիկվիդացման մասին համաձայնագրի ստորագրումով։

Ինդոնեզիայի և ամբողջ Ասիայի հասարակայնությունն այս հաջողությունը դիմավորեց մեծ գոհունակությամբ։

Սակայն իսկական անկախության հասնելու համար այդ բավական չէր։ Հաագայի բանակցությունները լուծում չտվին Արևմտյան Իրիանի (Նոր Գվինիայի արևմտյան մասը, որը պատկանում է Ինդոնեզիային, բայց ներկայումս օկուպացված է Հոլանդիայի կողմից) վերաբերյալ կարևոր հարցին։ Արևմտյան տերությունների դիմադրությունն այս հարցում կապված է ԱՄՆ-ի մեքենայությունների հետ, Հարավ-Արևմտյան Ասիայում։ Ինչպես հայտնի է, ԱՄՆ-ն Արևմտյան Իրիանում ունեն տնտեսական մեծ



շահեր և մտադիր են այս տերիտորիան վերածելու իրենց ռազմական բազայի։ Ինդոնեզական ժողովրդի լայն շրջանները պահանջում են վերադարձնել այս տերիտորիան։

Չնայած երկրի հսկայական հարստություններին, ինդոնեզական երիտասարդ պետությունը դեռևս հնարավորություն չունի դրանք լիովին օգտագործելու իր ազգային էկոնոմիկայի զարգացման շահերին, իր ժողովրդի կենսամակարդակի բարձրացման օգտին։ Այդ տեղի է ունենում այն պատճառով, որ տնտեսության մի շարք կարևոր ճյուղեր մինչև այժմ գտնվում են ինդոնեզական ժողովրդի շահագործումից հսկայական շահույթներ ստացող օտարերկրյա մոնոպոլիաների ձեռքում։

Վերջին ժամանակներս իր գործունեությունը նկատելիորեն աշխուժացնում է ամերիկյան կապիտալը։ Կաուչուկի և անագի վաճառահանման համաշխարհային շուկան վերահսկող ԱՄՆ-ի մոնոպոլիաներն արհեստականորեն իջեցնում են այդ ապրանքների գները, դրանով իսկ խարխլելով Ինդոնեզիայի արտաքին առևտրի հիմքերը։ Հայտնի է, օրինակ, որ ԱՄՆ-ը ծայրահեղ ցածր գներով արտահանում է ինդոնեզական անագի 65 տոկոսը և կաուչուկի 40 տոկոսը։ Ձգտելով ստրկացնել երկրի էկոնոմիկան,

ԱՄՆ-ն արգելակում է առևտրական հարաբերությունների նորմալացմանը դեմոկրատական լագերի երկրների հետ, մասնավորապես մեծ Չինաստանի հետ։

Ինդոնեզական հասարակայնությունը վճռականապես դատապարտում և մերժում է երկրի շահերին հակասող «էմբարգո»-ի քաղաքականությունը, որն ԱՄՆ-ը փորձում է նրա վզին փաթաթել դեմոկրատական լագերի հետ ունեցած առևտրի ընթացքում։ Ռեակցիայի մեքենայություններին հակառակ առևտրական փոխադարձ շահավետ համաձայնագրեր ստորագրվեցին Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի, Լեհաստանի, Հունգարիայի, Չեխոսլովակիայի հետ։

Ինդոնեզիայի և Սովետական Միության միջև հարաբերությունների զարգացման նպատակով մեր երկիրը մասնակցեց անցյալ տարի Ջակարտայում տեղի ունեցած միջազգային տոնավաճառին։ Այս ցուցահանդեսում սովետական պավիլիոնը գտնվում էր ընդհանուրի ուշադրության կենտրոնում։ Ի նշան ինդոնեզական ժողովրդի նկատմամբ ունեցած բարեկամության, Սովետական Միությունն այս պավիլիոնը նվիրեց ինդոնեզական կառավարությանը։

Ինդոնեզիայի ժողովուրդն անձնազոհ կերպով պայքարում է իմպերիալիստների տի-



րապետության վերջնական լիկվիդացիայի համար։ Ներկայումս երկրում տեղի է ունենում հայրենասիրական ուժերի համախմբման պրոցես։ Ժողովրդի պայքարում հսկայական դեր է խաղում երկրի ազգային պրոֆմիութենական խոշորագույն կենտրոն ՍՕԲՍ-ն, որն իր մեջ միավորում է 2,5 միլիոնից ավելի կազմակերպված աշխատավորներ։ Ազգային դիմադրության հոգին է հանդիսանում Ինդոնեզիայի բանվոր դասակարգը, որը ղեկավարվում է իր շարքերում 500 հազար մարդ ունեցող կոմպարտիայի կողմից։

Ամբողջ աշխատավորության հետ մեկտեղ պայքարում է ազգային-ազատագրական շարժման մեջ ներգրավված գյուղացիությունը։ Այս պայքարն օտարերկրյա ընկերություններին պատկանող հողերի գրավման կերպարանք ընդունեց։ Ըստ պաշտոնական տվյալների, հողերի գրավման շարժմանը մասնակցեց ավելի քան 750 հազար մարդ։

Ամերիկյան իմպերիալիստները ձգտելով իրենց ազդեցությանը ենթարկել Ինդոնեզիան, ստեղծում և ֆինանսավորում են ամեն տիպի հակաազգային քայքայիչ կազմակերպություններ և տեռորիստական խմբեր, ինչպես, օրինակ՝ «Դար ու իսլամ» բանդաները, փորձում են կաշառել տատանվող

տարրերին։ «Բայց չի կարելի կաշառել,— գրում է ինդոնեզական «Մերդեկա» լրագիրը,— ժողովրդին, որը ցանկանում է վարել անկախ քաղաքականություն և բոլոր ժողովուրդների հետ ապրել խաղաղության մեջ»։

Հոլանդական գաղութարարներն ամեն կերպ պաշտպանում են իրենց կողմից ստեղծված այսպես կոչված Հարավ-Մոլուկկյան կղզիների ռեսպուբլիկան, հուսալով սեպարատիստների և դավաճանների օգնությամբ կոտրել ինդոնեզական ժողովրդի կամքը և այդ շրջանը վերածել պատերազմի նոր օջախի Հարավ-Արևելյան Ասիայում։

Իմպերիալիստների և նրանց արբանյակների կողմից երկրում հեղաշրջում կատարելու վերջերս ձեռնարկած փորձը ձախողվեց։ Ինդոնեզիայի հասարակայնությունը պահանջում է լայն միջոցներ ձեռք առնել գաղութային տերությունների գործակալության քայքայիչ գործողությունների դեմ։

Ազգային-ազատագրական պայքարի բովում կոփված ինդոնեզական ժողովուրդը պայքարում է հանուն իր կենսական իրավունքների, հանուն լիակատար ազգային անկախության և խաղաղության։

---



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## *1. ՍՍՌՄ ԿՈՆՍՏԻՏՈՒՑԻԱՆ ԱՄԵՆԱԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆՆ Է ԱՇԽԱՐՀՈՒՄ*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

**Վ. Ի. ԼԵՆԻՆ**— «Դեմոկրատիայի» և դիկտատուրայի մասին, *Երկեր, հատոր 28, էջ 475—481, Հայպետհրատ, 1951։*

**Ի. Վ. ՍՏԱԼԻՆ**— ՍՍՌՄ Կոնստիտուցիայի նախագծի մասին, *առանձին բրոշյուր։*

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Կոնստիտուցիա:

Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի Կոնստիտուցիա:

Կանոնադրություն Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունների:

Կանոնադրություն Հայկական ՍՍՌ աշխատավորների դեպուտատների շրջանային, քաղաքային, գյուղական և ավանային Սովետների ընտրությունների:

*տարրերին։ «Բայց չի կարելի կաշառել,— գրում է ինդոնեզական «Մերդեկա» լրագիրը,— ժողովրդին, որը ցանկանում է վարել անկախ քաղաքականություն և բոլոր ժողովուրդների հետ ապրել խաղաղության մեջ»։*

*Հոլանդական գաղութարարներն ամեն կերպ պաշտպանում են իրենց կողմից ստեղծված այսպես կոչված Հարավ-Մոլուկկյան կղզիների ռեսպուբլիկան, հուսալով սեպարատիստների և դավաճանների օգնությամբ կոտրել ինդոնեզական ժողովրդի կամքը և այդ շրջանը վերածել պատերազմի նոր օջախի Հարավ-Արևելյան Ասիայում։*

*Իմպերիալիստների և նրանց արբանյակների կողմից երկրում հեղաշրջում կատարելու վերջերս ձեռնարկած փորձը ձախողվեց։ Ինդոնեզիայի հասարակայնությունը պահանջում է լայն միջոցներ ձեռք առնել գաղութային տերությունների գործակալության քայքայիչ գործողությունների դեմ։*

*Ազգային-ազատագրական պայքարի բովում կոփված ինդոնեզական ժողովուրդը պայքարում է հանուն իր կենսական իրավունքների, հանուն լիակատար ազգային անկախության և խաղաղության։*

---



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## *1. ՍՍՌՄ ԿՈՆՍՏԻՏՈՒՑԻԱՆ ԱՄԵՆԱԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆՆ Է ԱՇԽԱՐՀՈՒՄ*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— «Դեմոկրատիայի» և դիկտատուրայի մասին, *Երկեր, հատոր 28, էջ 475—481, Հայպետհրատ, 1951։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— ՍՍՌՄ Կոնստիտուցիայի նախագծի մասին, *առանձին բրոշյուր։*

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Կոնստիտուցիա։

Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի Կոնստիտուցիա։

Կանոնադրություն Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունների։

Կանոնադրություն Հայկական ՍՍՌ աշխատավորների դեպուտատների շրջանային, քաղաքային, գյուղական և ավանային Սովետների ընտրությունների։

## 2. *ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԴԵՊՈՒՏԱՏՆԵՐԻ ՍՈՎԵՏՆԵՐԸ ՍՍՌՄ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՀԻՄՔՆ ԵՆ ԿԱԶՄՈՒՄ*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Սովետական իշխանության հերթական խնդիրները, *Երկեր, հատոր 27, էջ 273—333, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ի՞նչ է Սովետական իշխանությունը, *Երկեր, հատոր 29, էջ 295—296, Հայպետհրատ, 1951։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— Լենինիզմի հարցերը, *էջ 46—50, Հայպետհրատ, 1940։*

Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ— Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին, *էջ 91—97, Հայպետհրատ, 1953։*

## 3. *ՌՈՒՍԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՀԻՍՈՒՆԱՄՅԱԿԸ*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ռուսական առաջին ռևոլյուցիայի հիսունամյակը, *(թեզիսներ), տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի հունվարի 22-ի և 23-ի համարներում։*

Ռուսական առաջին ռևոլյուցիայի հիսունամյակը *«Ագիտատորի բլոկնոտ» № 2։*

Մեր Հայրենիքի պատմության նշանակալից էջը, *«Ս. Հ.»-ի առաջնորդող հոդվածը, տպագրված 1955 թվականի հունվարի 23-ի համարում։*



Վ. ԱՆԳՈՐՍԿԻ, Ջ. ԲՈԳՐԱԴ— «Արյունոտ կիրակին», *տպագրված «Ս. Հ.»-ի հունվարի 23-ի համարում։*

## 4. *ՍՈՎԵՏԱԿԱՆ ԲԱՆԱԿԻ ԵՎ ՌԱԶՄԱ-ԾՈՎԱՅԻՆ ՆԱՎԱՏՈՐՄԻ ՕՐԸ*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ճառ արտասանած «Կարմիր սպայի օրը» *1918 թ. նոյեմբերի 24-ին, Երկեր, հատոր 28, էջ 238—239, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Դիմում Կարմիր Բանակին, *Երկեր, հատոր 29, էջ 290—292, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ճառ Կոլչակի դեմ մղվող պայքարի մասին Մոսկվայի ֆաբրիկա-գործարանային կոմիտեների և պրոֆեսիոնալ միությունների կոնֆերենցիայում, *17 ապրիլի 1919 թ., Երկեր, հատոր 28, էջ 388—392, Հայպետհրատ, 1951։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— Կարմիր Բանակի երեք առանձնահատկությունների մասին, *առանձին բրոշյուր, Հայպետհրատ։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— Սովետական Միության Հայրենական Մեծ պատերազմի մասին, *առանձին գիրք, Հայպետհրատ։*

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1954 թվականի պետական պլանի կատարման արդյունքների մասին, ՍՍՌՄ Մինիստրների Սովետին կից Կենտրոնական Վիճակագրական վարչության հաղոր-

դագրությունը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի հունվարի 22-ի համարում։*

Անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու մասին ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը, *ընդունված 1955 թվականի հունվարի 31-ին ընկ. Ն. Խրուշչևի զեկուցման առթիվ, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի փետրվարի 2-ի համարում։*

## 5. ՀԱՆՈՒՆ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԵՎ ՍՍՌՄ-Ի ՈՒ ԳԵՐՄԱՆԻԱՅԻ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Սովետական կառավարության հայտարարությունը գերմանական հարցի վերաբերյալ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի հունվարի 16-ի համարում։*

Գերմանական ժողովուրդը պետք է ընտրություն կատարի, թե այսուհետև ինչ ուղիով ընթանա, *«Պրավդա»-ի հունվարի 17-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի հունվարի 18-ի համարում։*

Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի մինիստրների խորհրդի հայտարարությունը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի հունվարի 23-ի համարում։*

Հանուն խաղաղության և ՍՍՌՄ-ի ու Գերմանիայի ժողովուրդների բարեկամության, *«Պրավդա»-ի առաջնորդող հոդվածը, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի հունվարի 27-ի համարում։*



## 6. ԿԱԶՄ ՈՒ ՊԱՏՐԱՍՏ ԴԻՄԱՎՈՐԵՆՔ ԳԱՐՆԱՆԱՑԱՆԸ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1954 թվականի պետական պլանի կատարման արդյունքների մասին, ՍՍՌՄ Մինիստրների Սովետին կից Կենտրոնական Վիճակագրական վարչության հաղորդագրությունը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի հունվարի 22-ի համարում։*

ՍՍՌՄ գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին, ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը, *ընդունված 1953 թ. սեպտեմբերի 7-ին ընկ. Ն. Ս. Խրուշչևի զեկուցման առթիվ, Հայպետհրատ, 1953։*

Անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու մասին ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը, *ընդունված 1955 թվականի հունվարի 31-ին ընկ. Ն. Խրուշչևի զեկուցման առթիվ, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի փետրվարի 2-ի համարում։*

Գերազանց նախապատրաստվենք գարնանացանին, *«Ս. Հ.»-ի առաջնորդող հոդվածը, տպագրված այս տարվա հունվարի 18-ի համարում։*

Հաշվետու և հաշվետու-ընտրական ժողովները կոլտնտեսություններում, *«Ս. Հ.»-ի առաջնորդող հոդվածը, տպագրված այս տարվա հունվարի 20-ի համարում։*

---

# ՊԵՏԱԿԱՆ ՓՈԽԱՌՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՇԱՀՈՒՄՆԵՐԻ ԵՎ ՄԱՐՄԱՆ ԽԱՂԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ 1955 ԹՎԱԿԱՆԻ ՊԼԱՆԸ

*Հունվարի 23-ին՝ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման Երկրորդ պետական փոխառության շահումների 15-րդ խաղարկությունը Վելիկիե Լուկի քաղաքում։*

*Հունվարի 30-ին՝ Պետական 3%-անոց ներքին շահող փոխառության շահումների 43-րդ խաղարկությունը Տաշքենդ քաղաքում։*

*Փետրվարի 27-ին՝ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման Երրորդ պետական փոխառության շահումների 13-րդ խաղարկությունը Բրյանսկ քաղաքում։*

*Մարտի 13-ին՝ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման Չորրորդ պետական փոխառության շահումների 11-րդ խաղարկությունը Չերկասսկ քաղաքում։*

*Մարտի 20-ին՝ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման պետական փոխառության (1953 թ. թողարկում) շահումների 3-րդ խաղարկությունը Կուստանայ քաղաքում։*

*Մարտի 30-ին՝ Պետական 3%-անոց ներքին շահող փոխառության շահումների 9-րդ խաղարկությունը Ստալինո քաղաքում։*



*Ապրիլի 24-ին՝ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման Հինգերորդ պետական փոխառության շահումների 9-րդ խաղարկությունը Ստալինո քաղաքում։*

*Մայիսի 8-ին՝ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման պետական փոխառության (1951 թ. թողարկում) շահումների 7-րդ խաղարկությունը Լիպեցկ քաղաքում։*

*Մայիսի 22-ին՝ 1948 թ. Պետական 2%-անոց փոխառության շահումների 15-րդ խաղարկությունը Խմելնիցկ քաղաքում։*

*Մայիսի 30-ին՝ Պետական 3%-անոց ներքին շահող փոխառության շահումների 45-րդ խաղարկությունը Նովոսիբիրսկ քաղաքում։*

*Հունիսի 12-ին՝ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման պետական փոխառության (1952 թ. թողարկում) շահումների 5-րդ խաղարկությունը Սարանսկ քաղաքում։*

*Հուլիսի 24-ին՝ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման Երկրորդ պետական փոխառության շահումների 16-րդ խաղարկությունը Կրիվոյ Ռոգ քաղաքում։*

*Հուլիսի 30-ին՝ Պետական 3%-անոց ներքին շահող փոխառության շահումների 46-րդ խաղարկությունը Դնեպրոպետրովսկ քաղաքում։*

*Օգոստոսի 7-ին՝ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման պետական փոխառության (1954 թ-*

թողարկում) շահումների 1-ին խաղարկությունը Մոսկ-
վա քաղաքում:

Օգոստոսի 14-ին՝ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսու-
թյան զարգացման պետական փոխառության (1953 թ.
թողարկում) շահումների 4-րդ խաղարկությունը Կիրով
քաղաքում:

Օգոստոսի 21-ին՝ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսու-
թյան վերականգնման ու զարգացման Երրորդ պետա-
կան փոխառության շահումների 14-րդ խաղարկությու-
նը Վիտեբսկ քաղաքում:

Սեպտեմբերի 4-ին՝ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսու-
թյան վերականգնման ու զարգացման Չորրորդ պե-
տական փոխառության շահումների 12-րդ խաղարկու-
թյունը Մախաչ-Կալա քաղաքում:

Սեպտեմբերի 18-ին և 19-ին՝ ՍՍՌՄ ժողովրդական
տնտեսության վերականգնման ու զարգացման Հին-
գերորդ պետական փոխառության շահումների 10-րդ
և մարումների 1-ին խաղարկությունները Սմոլենսկ
քաղաքում:

Սեպտեմբերի 30-ին՝ Պետական 3%-անոց ներքին
շահող փոխառության շահումների հիմնական 47-րդ և
լրացուցիչ 8-րդ խաղարկությունները Մոսկվա քաղա-
քում:

Հոկտեմբերի 9-ին՝ ՍՍՌՄ ժողովրդական տնտե-
սության զարգացման պետական փոխառության (1951
թ. թողարկում) շահումների 8-րդ խաղարկությունը
Միչուրինսկ քաղաքում:

Հոկտեմբերի 23-ին՝ ՍՍՌՄ ժողովրդական տնտե-



սության վերականգնման ու զարգացման Երկրորդ
պետական փոխառության մարումների 4-րդ խաղար-
կությունը Մոսկվա քաղաքում:

Նոյեմբերի 13-ին՝ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսու-
թյան վերականգնման ու զարգացման Երրորդ պետա-
կան փոխառության մարումների 3-րդ խաղարկությու-
նը Մոսկվա քաղաքում:

Նոյեմբերի 20-ին՝ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսու-
թյան զարգացման պետական փոխառության (1954
թ. թողարկում) շահումների 2-րդ խաղարկությունը
Արզամաս քաղաքում:

Նոյեմբերի 30-ին՝ Պետական 3%-անոց ներքին շա-
հող փոխառության շահումների 48-րդ խաղարկությու-
նը Լենինգրադ քաղաքում:

Դեկտեմբերի 11-ին՝ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսու-
թյան վերականգնման ու զարգացման Չորրորդ պե-
տական փոխառության մարումների 2-րդ խաղարկու-
թյունը Մոսկվա քաղաքում:

Դեկտեմբերի 18-ին և 19-ին—20-ին՝ 1948 թ. Պե-
տական 2%-անոց փոխառության շահումների 16-րդ
և մարումների 4-րդ խաղարկությունները Բելգորոդ
քաղաքում:

Դեկտեմբերի 25-ին՝ ՍՍՌՄ ժողովրդական տնտե-
սության զարգացման պետական փոխառության (1952
թ. թողարկում) շահումների 6-րդ խաղարկությունը
Չիմքենդ քաղաքում:

ՊԵՏԱՇԽԽՆԱՅԴՐԱՄԱՐԿՂՆԵՐԻ ԵՎ ՊԵՏՎԱՐԿԻ
ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ՎԱՐՉՈՒԹՅՈՒՆ

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել.

Ա. Ս. Պուշկին.— *«Երկեր»: Հինգ հատորով: Հատոր 1-ին: 484 էջ, գինը 8 ռ. 75 կ., տիրաժ 15.000:*

Մ. Վ. Վլադիմիրսկի.— *«Անասնաբուծության կոմպլեքսային մեքենայացումը կոլտնտեսություններում»: 140 էջ, գինը 1 ռ. 55 կ., տիրաժ 3.000:*

Ա. Թարվերդյան.— *«Ջրօգտագործումը կոլտնտեսություններում»: 96 էջ, գինը 1 ռ., տիրաժ 2.000:*

---

Խմբագիր՝ ԳՐ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

---

Отдел Пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 3 1955 г.

*ՎՖ 08914 Պատվեր 116 Տիրաժ 8200*

---

*ՀՍՍՌ Կուլտ. մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության № 2 տպարան, Երևան Կնունյանցի № 8,*
*1955 թ., գինը 50 կոպ.:*